# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ



ՀՈՒՆՎԱՐ

1

1965

# ՇՆՈՐՀԱՎՈՐ ՁԵՐ ՆՈՐ ՏԱՐԻՆ, ԹԱՆԿԱԳԻՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78.

Адрес редакции — Ереван. ЦК КП Армении, II этаж. ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

АГИТАТОРИ ԲԼՈԿՆՈՏ

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1965

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

## ՆՈՐ ՏԱՐԻ, ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

Պատմության գիրկն անցավ ևս մեկ տարի՝ յոթնամյակի վեցերորդ տարին։ Ընդունված տրադիցիայի համաձայն գնացող ու եկող տարիների սահմանագծում կատարվում է յուրատեսակ «ընդունում և հանձնում»։ Ճիշտ է, արտաքինից թվում է, թե ոչ հանձնելու բան կա և ոչ էլ ընդունելու, բայց դա միայն արտաքինից։ Իրականում կա և՛ մեկը, և՛ մյուսը։ Չէ՞ որ մի ամբողջ տարի սովետական մարդիկ աշխատել են, պայքարել ու ստեղծագործել, և այժմ հարկավոր է արդյունքներն ամփոփել, ասել, թե իսկապես ինչ է հանձնվում նոր տարվան, կամ ավելի ճիշտ՝ ինչպիսի հետք է թողնում անցնող տարին մեր կյանքում։

Իրոք որ լավն էր 1964 թվականը. շատ ու շատ կարևոր իրադարձություններ եղան ինչպես մեր երկրում, այնպես էլ միջազգային մասշտաբով։ Աշխարհի քաղաքական քարտեզի վրա երևացին նոր, անկախ պետություններ, մարդկությունը վճռական քայլեր արեց խաղաղությունն ամրապնդելու համար մղվող պայքարում։ Սովետական ժողովուրդը առաջընթաց վիթխարի թռիչք կատարեց էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառում, տիեզերք արձակելով աշխարհում առաջին բազմատեղանոց տիեզերանավը։ Ուշագրավ շատ միջոցառումներ իրագործեցին մեր պարտիան ու սովետական կառավարությունը կոմունիստական շինարարության տեմպերն արագացնելու, միջազգային լարվածությունը մեղմացնելու ուղղությամբ, որոնք է՛լ ավելի բարձրացրին սովետական պետության

դերն ու հեղինակությունն ամբողջ աշխարհում:

Տարեավարտի նախօրյակին տեղի ունեցած ՍՍՌՄ Գերագույն սովետի վեցերորդ գումարման հինգերորդ սեսիան, ասես, եղավ ամփոփողն այն ամենի, ինչ ձեռք էր բերվել ավարտվող տարում: Սեսիան քննարկեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պետական պլանը և բյուջեն, ընդունեց օրենքներ ու որոշումներ, որոնք արժանացան մեր երկրի աշխատավորների միահամուռ հավանությանն ու ջերմ պաշտպանությանը: Սեսիայի որոշումների նշանակությունը, սակայն, դուրս է եկել մեր երկրի սահմաններից, քանի որ դրանք, արտահայտելով հողագնդի միլիոնավոր մարդկանց խոհերն ու զգացմունքները, ուղղված են սովետական պետության հզորության հետագա ամրապնդման, ժողովրդի բարեկեցության շեշտակի բարձրացման, ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու ազնիվ ու վեհ նպատակին:

Իսկ ի՞նչն է 1965 թվականի առաջադրանքների առանձնահատկությունը: Ամենից առաջ այն, որ դրանք նախատեսում են ազգային եկամտի, հասարակական արտադրության և աշխատավորների բարեկեցության բարելավման բարձր ու արագ տեմպեր: Հայտնի է, որ ազգային եկամուտը նյութական բարիքների ամբողջ արտադրությունն ընդհանրացնող ցուցանիշ է: Այս տարի այն կաճի 8 տոկոսով. ազգային եկամտի նման աճ չի եղել և ոչ մի տարի: Ուշագրավ է նաև այն, որ սպառման միջոցների արտադրության ավելացման տեմպերը մոտեցվում են արտադրության միջոցների արտադրության տեմպերին: Անցյալ տարվա 4,5 միլիարդի փոխարեն այս տարի բնակչությանը վաճառվող ապրանքների քանակը կաճի 7 միլիարդ ռուբլով: 1965 թվականին բնակչության ռեալ եկամուտները մեկ շնչի հաշվով կավելանան 7 տոկոսով. դա կրկնակիորեն ավելի է յոթնամյակի անցած տարիների միջին աճի տեմպերից: Հունվարի մեկից ամենուրեք իրագործվեց անցումը բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացված մինիմումին, տարեվերջի փոխարեն մայիսի մեկից կիրականացվի ժողովրդի սպասարկման ոլորտի բոլոր աշխատողների աշխատավարձի բարձրացումը: Միաժամանակ խոշոր միջոցառումներ կիրագործվեն բնակարանային շինարարության ծավալման, ժողովրդական առողջապահության, սոցիալական ապահովության, կուլտուրայի ու արվես-







տի զարգացման ուղղությամբ:

Ահա թե ինչ է ուսուցանում սոցիալիզմի թվաբանությունը:

Նոր տարուց մեկ շաբաթ առաջ իր աշխատանքն ավարտեց նաև Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի 4-րդ սեսիան, որը հաստատեց ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պետական պլանը և բյուջեն: ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում անշեղ վերելքի ուղիով են ընթանում նաև Սովետական Հայաստանի էկոնոմիկան և կուլտուրան: Յոթնամյակի վեցերորդ տարում նոր հաջողությունների հասան մեր արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատողները: Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ժամկետից շուտ կատարեց տարվա պլանը, տալով միլիոնավոր ռուբլու արտապլանային արտադրանք. շարք մտան բազմաթիվ նոր, խոշոր ձեռնարկություններ ու արտադրական տեղամասեր, նկատելիորեն բարձրացավ արտադրության տեխնիկական մակարդակն ու զինվածությունը:

Յոթնամյակի վեցերորդ տարում, հաղթահարելով կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով ստեղծված դժվարությունները, հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների բարձր բերք աճեցրին և պետության հանդեպ իրենց պարտավորությունները հաջողությամբ կատարեցին Բասարգեչարի, Ալավերդու, Հոկտեմբերյանի հողագործները; Ախուրյանի ճակնդեղագործները, Շամշադինի, Իջևանի և Մարտունու ծխախոտագործները: Անասնապահական մթերքների արտադրության գծով որոշակի հաջողությունների հասան Ստեփանավանի, Ղուկասյանի, Էջմիածնի մի շարք կոլտնտեսություններ և սովխոզներ: Լուրջ միջոցառումներ իրագործվեցին ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ուղղությամբ: Վերջին տարում նոր բնակարաններ են ստացել մոտ 13 հազար ընտանիքներ, յոթ ու կես տոկոսով աճել է մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը, ավելացել է արդյունաբերական ու պարենային ապրանքների վաճառքը բնակչությանը: Անցնող տարում, ինչպես միշտ, բեղմնավոր աշխատեց նաև մեր ինտելիգենցիան, էական տեղաշարժեր նկատվեցին գիտության, կուլտուրայի, արվեստի զարգացման բնագավառում:

Հաջողություններն իրոք մեծ են, բայց առավել ոգեվորիչ են հեռանկարները, հետևապես և շատ՝ անելիքները։ Սակայն տարվել հաջողություններով և հույսը դնել ինքնահոսի վրա, երբեք չի կարելի, մանավանդ եթե նկատի ունենանք, որ թերություններն ու բացթողումներն էլ քիչ չեն։ Չնայած արդյունաբերությունն, ընդհանուր առմամբ, հաջող է աշխատում, բայց մի քանի տասնյակ ձեռնարկություններ շարունակում են թերակատարել պետական առաջադրանքները, դեռևս ցածր է թողարկվող արտադրանքի որակը, արտադրանքի շատ տեսակներ վնասաբեր են, ամենուրեք չէ, որ հետևողական պայքար է մղվում խնայողության ու տնտեսավարության համար։

Լուրջ թերություններ կան մասնավորապես գյուղատնտեսության գծով։ Առաջիկայում մեծ աշխատանք կկատարվի գյուղատնտեսության մեջ արագ կերպով արմատավորելու գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, հետևողական պայքար մղելու եղած ռեզերվները խելացիորեն օգտագործելու համար։

Պարտիան խնդիր է դնում վճռականորեն հաղթահարել եղած թերությունները և արագորեն շտկել սխալները, սոցիալական ու տնտեսական պրոբլեմների լուծման գործում հանդես բերել խոր գիտական մոտեցում, ամենուրեք կիրառել խստագույն հաշվառում, արդյունավետ և խնայողաբար ծախսել միջոցները։ Չպետք է մոռանալ, որ հենց դա էլ կոմունիստական շինարարության բարձրագույն մաթեմատիկան է, տնտեսության զարգացման կարևոր պայմանը։ Կոմունիզմին խորթ են տարերայնությունն ու վարչարարությունը, մեզանում ամեն ինչ պետք է լինի չափված, ճիշտ կշռված ու հաշված։

Ինչպես ՍՍՌՄ Գերագույն սովետի, այնպես էլ ռեսպուբլիկայի պետական իշխանության բարձրագույն օրգանի ընդունած օրենքներն ու որոշումները տոգորված են մարդու նկատմամբ ջերմ հոգատարությամբ և ուշադրությամբ, դրանք իսկական հումանիստական փաստաթղթեր են, որոնց իմաստը պետք է հասցնել լայն մասսաների գիտակցությանը։

Այս օրերին գործունեության լայն ասպարեզ է բացվել ագիտատորների համար։ Նրանք պարտավոր են զրույցներ անցկացնել այս տարվա պետական պլանի և բյուջեի մասին, մարդկանց բացատրել ներքին և մի-



ջազգային այն խոշոր նշանակությունը, որ ունեն սեսիաների որոշումներն ու օրենքները։ Ագիտատորի պարտքն է տպավորիչ ու վառ փաստերով ցույց տալ կոմունիզմի ուղիով սովետների երկրի հաղթական առաջընթացում ձեռք բերված մեր նվաճումները, բացատրել, որ դրանց մեջ իր բաժինն ունի սովետական յուրաքանչյուր ազնիվ աշխատավոր։

Մենք գիտենք, որ պլաններն իրագործվում են միլիոնների աշխատանքով։ Վաղուց արդեն ամբողջ աշխարհին հայտնի է սովետական մարդու գործարարությունն ու ոգեշունչ, նվիրական աշխատանքը։ Ագիտատորները պետք է աշխատավորների ուշադրությունը կենտրոնացնեն առաջնահերթ խնդիրների լուծման վրա, գլխավոր նպատակին ուղղեն մասսաների եռանդն ու էներգիան։

Ագիտատորը պետք է ոչ միայն խոսի հաջողությունների մասին, այլև համարձակորեն բացահայտի թերությունները, երբեք չխուսափի սուր հարցերին շիտակ ու ճշմարիտ պատասխաններ տալուց։ Նրա խոսքը ներգործուն կլինի միայն այն դեպքում, երբ արտահայտի իրերի իսկական վիճակը, օբյեկտիվ ճշմարտությունը։ Երևույթների գունազարդումը, փքուն և դատարկ ճառերը խորթ են ագիտատորներին, դրանք կարող են գործին վնասել։ Մեզ հարկավոր է նպատակասլաց, կյանքի հետ սերտորեն կապված բովանդակալից ու մարտական ագիտացիա և ոչ թե քաղաքական ճարճատյուն, պարադայնություն ու աղմկարարություն։ Չպետք է մոռանալ ժողովրդական հայտնի ասացվածքը՝ ով խոսքով բուրգեր է կառուցում, գործով խրճիթ էլ չի կարող շինել։ Ուրեմն ագիտատորի խոսքը գործից չպետք է տարբերվի։ Նա աշխատանքում իր անձնական օրինակով պետք է ոգևորի ուրիշներին, ուղղի ճիշտ ճանապարհից շեղվողներին։

Ագիտատորի համար չկա ավելի մեծ ու պատվավոր բան, քան մեր պարտիայի քաղաքականությունը պրոպագանդելը, նրա ճշմարտացի խոսքը մասսաներին հասցնելը։ Զրույցներ անցկացնել կոմունիզմ կառուցող սովետական մարդու, նրա վեհ ձգտումների, ազնիվ զգացմունքների ու բարի նպատակների մասին։

# ԻՆՉՊԵ՞Ս ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑՆԵՐ ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐՈՎ

*Աթեիստական թեմաներով զրույցներ անցկացնելիս ամենից առաջ հարկավոր է ճիշտ ընտրել զրույցի թեման և կազմել պլան։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ աթեիստական, ինչպես և ամեն մի այլ թեմայով զրույցը հաջող և արդյունավետ կարող է լինել միայն այն դեպքում, երբ այն կոնկրետ է, հագեցված առօրյա փաստերով, գիտության ու տեխնիկայի նվաճումների մասին տվյալներով։ Այժմ չի կարելի բավարարվել կրոնի մասին ընդհանրապես խոսելով։ Առավել մեծ ուշադրություն պետք է դարձնել բնության և հասարակական երևույթների գիտական մեկնաբանմանը, գիտական գիտելիքների տարածման վրա, որովհետև գիտությունը քայլ առ քայլ դուրս է մղում կրոնը իր բոլոր ապաստարաններից։ Դա կրոնի և նրա դոգմաների ամենամեծ հերքումն է։*

*Հակակրոնական պրոպագանդան, այսպիսով, պետք է դառնա գիտական գիտելիքների լայն տարածման և պարզաբանման, աշխատավորների մատերիալիստական աշխարհայացքը ձևավորելու մի կարևոր միջոց։*

*Պետք է նաև նկատի ունենալ, որ կրոնի մեջ առավել պահպանողական են նրա այն տարրերը, որոնք կապված են մարդկանց զգացմունքների հետ։ Դա մանավորապես վերաբերում է կրոնական տոներին ու արարողություններին, որոնք ավելի խոր են մտել մարդկանց կենցաղում և դարձել տրադիցիաներ ու սովորույթներ։ Դրանց հաղթահարումը ավելի մեծ դժվարություն է ներկայացնում, և այդ ուղղությամբ հարկավոր է ավելի հետևողական ու սիստեմատիկ աշխատանք կատարել։ Պետք է հիմնավոր կերպով պարզաբանել այդ տոների ու արարողությունների հետամնացությունն ու վնասակարությունը։*

*Աթեիստական թեմայով զրույց անցկացնելիս պետք է ունկնդիրներին հասկանալի և համոզիչ կերպով բացատրել կրոնական այս կամ այն դոգմայի վնասակարությունը բնության, հասարակության կամ մարդու կյանքի տարբեր երևույթների վերաբերյալ։ Ենթադրենք, թե ագիտատորը զրույց է անցկացնում «Գիտությունը և կրոնը կյանքի ծագման մասին» թեմայով։ Նա պետք*



*է հստակ կերպով գիտենա երկրի վրա կյանքի ծագման վերաբերյալ ժամանակակից գիտական պատկերացումները, բուսական աշխարհի էվոլյուցիան, երկարատև աստիճանական զարգացման պրոցեսի մասին գիտական հայացքները, ապա բացատրի, թե ինչու անհնարին է աստծու կողմից երկրի վրա կյանքի և մարդու հրաշքային արարչագործությունը, որի մասին քարոզում են կրոնի պաշտպանները։*

*Հոգևորականներն ու նրանց ջատագովները իրենց կրոնական դոգմաները հիմնավորելու նպատակով օգտագործում են գիտության առջև ծառացող դժվարությունները՝ բնության այս կամ այն երևույթը բացատրելիս։ Այսպես, օրինակ, հայտնի է, որ մինչև այսօր էլ բժշկական գիտությունը դեռևս չի կարողանում հայտնաբերել առանձին ծանր հիվանդությունների առաջացման պատճառները և չի կարողացել գտնել նրանց բուժման միջոցները։ Հոգևորականներն ու նրանց կամակատարները այդ փաստն օգտագործում են գիտության դեմ, փորձում են դրանով իսկ ժխտել գիտության դերն ու նշանակությունը մարդկանց կյանքում և հիմնավորել կրոնական պատկերացումներն ու նախապաշարմունքները։*

*«Բժշկությունը և կրոնը» թեմայով զրույցներ անցկացնելիս չպետք է անտեսել այս հանգամանքը։ Չի կարելի խուսափել այդ մասին խոսելուց, այլ հարկավոր է ուղղակի կերպով նշել, որ իրոք, գիտությունը դեռևս ամեն ինչ չէ որ հայտնաբերել է և գիտության խնդիրներն էլ սպառված չեն, որ այն անընդհատ զարգանում է, կատարելագործվում, բացահայտում է բնության նորանոր գաղտնիքները։ Զրույցի ժամանակ կարելի է բազմաթիվ փաստեր հիշատակել այն մասին, թե ինչպես գիտությունը միշտ զարգանում, առաջ է գնում, ճանաչում է բնության երևույթների մինչ այդ մեզ անհայտ կապերն ու նրանց զարգացման օրինաչափությունները։*

*Աշխարհի վերաբերյալ կրոնական հայացքները հերքելու գործում չափազանց հարուստ նյութ են տալիս գիտության ու տեխնիկայի հաջողությունները տիեզերքի նվաճման ուղղությամբ։ Ուստի և շատ արդյունավետ են այդ հարցերի վերաբերյալ աթեիստական բնույթի զրույցները, որոնք ուղղակի կերպով կարող են կապվել այսօրվա մեր գիտության ու տեխնիկայի զարգացման հետ, հարստացվել շատ դիպուկ, համոզիչ փաստարկներով։*

Աթեիստական բնույթի շատ զրույցներ կարելի է անցկացնել կապված՝ քիմիայի ամենատարբեր բնագավառների հետ։ Ինչպես հայտնի է, ժամանակակից քիմիան հնարավորություն է ստեղծել գազից, նավթից, քարից և այլ նյութերից ստանալու նյութի սինթետիկ և արհեստական ամենաբազմազան նոր տեսակներ, որոնք բնության մեջ պատրաստի վիճակում գոյություն չունեն։ Քիմիական ռեակցիաների միջոցով կարելի է շատ նյութեր ենթարկել ամենաբազմազան, անհնարին թվացող ձևափոխությունների։ Այդ բոլորը կրոնական առասպելների, զանազան այսպես կոչված «հրաշքների» ամենալավ և հիմնովին հերքումն են հանդիսանում։ «Քիմիան և կրոնը» թեմայով զրույցների մի կարևոր առանձնահատկությունն էլ այն է, որ դրանք կարող են ուղեկցվել բազմաթիվ փորձերով, որոնք ավելի հասկանալի, համոզիչ և արդյունավետ կդարձնեն զրույցները։

Կենցաղում դեռևս պահպանվող հնացած, վնասակար սովորույթների, տրադիցիաների ու կրոնական տոների դեմ զրույցներ կազմակերպելիս պետք է ընդգծել դրանց ավելորդություններն ու վնասակարությունը յուրաքանչյուր մարդու և ամբողջ հասարակության համար։ Այս հարցերի մասին խոսող առանձին ընկերներ, ձգտելով հիմնավորել կրոնական տոների ու ծեսերի վնասակարությունը, որպես փաստարկ նշում են առանձին դեպքեր ու օրինակներ, որոնք չեն կարող համոզեցուցիչ լինել։ Նման դեպքում զրույցի դերը թուլանում է, այն դառնում անարդյունավետ։ Այսպես, օրինակ, խոսելով այն մասին, որ վնասակար է կրոնական որևէ տոն նշելու համար սրբավայրում հավաքվելը, առանձին ընկերներ այդ միտքը հիմնավորելու նպատակով բերում են այն փաստը, որ սրբավայրերում հարբում են, կռվում, երբեմն խուլիգանություն անում, սրբավայրից վերադառնալիս ավտովթարի ենթարկվում։ Բայց մի՞թե դրանով է բնորոշվում կրոնական ծեսերի ու տոների վնասակարությունը։ Իսկ եթե ոչ մի հարբեցողություն, խուլիգանություն տեղի չունենա և ավտովթար էլ չպատահի, այն դեպքում մի՞թե այդ ծեսերն ու տոները կդադարեն անիմաստ ու վնասակար լինելուց։ Հետևաբար պետք է խոսել ոչ թե այս կամ այն պատահական փաստի մասին, այլ այդ տոների ու ծեսերի բուն էության մասին, նրանց վնասակար բովանդակության մասին։ Միայն այդ դեպքում զրույցն իր նպատակին կհասնի և արդյունավետ կլինի։



Հոգևորականները, սովորաբար, իրենց դիրքերն ամրապնդելու նպատակով ձգտում են կրոնական ծեսերին ու տոներին տալ ազգային տրադիցիաների ու սովորույթների բնույթ։ Դրանով նրանք ձգտում են ավելի լայնորեն տարածել և կենցաղում ամրապնդել այդ վնասակար ծեսերն ու տոները։ Ուստի հարկավոր է դրանց մասին զրույց անցկացնելիս մերկացնել կրոնի պաշտպանների այդպիսի փորձերը, ցույց տալ ազգային աշխարհիկ սովորույթների ու տրադիցիաների տարբերությունը կրոնական ծեսերից ու տոներից, որոնք սահմանվել են կրոնական ուսմունքների այս կամ այն դոգման հիմնավորելու նպատակով և որոնք հատուկ են ոչ թե միայն տվյալ ժողովրդին, այլ ընդհանրապես կրոնական այս կամ այն ուսմունքին հետևող տարբեր ժողովուրդներին։

Կարևոր նշանակություն ունի երեխաների աթեիստական դաստիարակությունը, որն իրականացվում է նախադպրոցական հաստատությունների, դպրոցի, պիոներական և կոմերիտական կազմակերպությունների կողմից։ Այդ գործում մեծ է նաև ծնողների, ընտանիքի դերը։ Ուստի և խիստ անհրաժեշտ է ծնողների համար զրույցներ կազմակերպել՝ «Ընտանիքը և երեխաների աթեիստական դաստիարակությունը» և «Ծնողների դերը երեխաների աթեիստական դաստիարակության գործում» թեմաներով։ Այս զրույցների ժամանակ պետք է ընդգծել այն հանգամանքը, որ երեխաների առաջին հայացքները աշխարհի այս կամ այն երևույթի մասին սկզբնապես ձևավորվում են ընտանիքում, ծնողների և ընտանիքի ավագ ընկերների ներգործությամբ։ Բացի այդ, ծնողները երեխաների համար հանդիսանում են առավել հեղինակավոր, ազդեցիկ անձնավորություններ, որոնց խոսքն ու վարմունքը ներգործման մեծ ուժ են։ Ուստի և ծնողները պետք է ամեն ինչ անեն իրենց երեխաներին աթեիստական ոգով դաստիարակելու, կրոնից ու եկեղեցուց հեռու պահելու համար։ Երեխաների ընտանեկան դաստիարակությունը ոչ միայն չպետք է հակադրվի նրանց դպրոցական դաստիարակությանը, որը կատարվում է գիտական-աթեիստական հիմունքներով, այլ այն պետք է նպաստի նրա հաջող իրականացմանը ինչպես բոլոր բնագավառներում, այնպես էլ աթեիստական դաստիարակության տեսակետից։

Աթեիստական թեմաներով զրույցներ անցկացնելիս

Հարկավոր է խուսափել հավատացյալների և հոգևորականության նկատմամբ անձնական վիրավորանք հասցնող արտահայտություններ գործածելուց: Պետք է միշտ նկատի ունենալ, որ խոսքը ներգործուն է լինում նրանով, թե այն որքանով ճիշտ է, համոզիչ, փաստերով հիմնավորված: Ուստի և աթեիստ ագիտատորի խնդիրն է խուսափել վիրավորական տերմիններից ու դատողություններից, ունկնդիրների հետ զրույցներ ունենալ պարզ, համոզեցուցիչ գիտական փաստերով ու տվյալներով: Դա կօգնի ունկնդիր հավատացյալին, որպեսզի նա սկսի կասկածել իր կրոնական հայացքների վրա, պարզ պատկերացումներ ունենա գիտական ճշմարտությունների մասին և կամավոր կերպով հրաժարվի կրոնից ու կանգնի գիտության կողմը, ճշմարտության կողմը:

Աթեիստական թեմաներով զրույցներ անցկացնելիս պետք է օգտագործել վերջին տարիներս լույս տեսած հարուստ գրականությունը, հատկապես մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հայտնի աշխատությունները՝ Ֆ. Էնգելսի «Անտի Դյուրինգը», «Բնության դիալեկտիկան», «Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը», Վ. Ի. Լենինի «Սոցիալիզմը և կրոնը», «Բանվորական պարտիայի վերաբերմունքը դեպի կրոնը», «Դասակարգերն ու պարտիաները իրենց վերաբերմունքով դեպի կրոնն ու եկեղեցին», ինչպես նաև օգտվել «Գիտական աթեիզմի հիմունքները», «Զրույցներ կրոնի և գիտության մասին» ուսումնական ձեռնարկներից, «Պատասխան հավատացյալներին», «Աթեիստի ուղեկից» ժողովածուներից և աթեիստական բնույթի մյուս գրքերից ու բրոշյուրներից: Լավ կլինի նաև օգտագործել «Նաուկա ի ռելիգիա» և «Ագիտատոր» ամսագրերում տպագրվող նյութերը, որոնցում ոչ միայն հերքվում են կրոնական դոգմաներն ու հրաշքները, այլև լուսաբանվում է աթեիստական աշխատանքի դրական փորձը:

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ

*Փիլիսոփայական գիտությունների թեկնածու*

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ՆԱ ՇԱՀԵԼ Է ԲՈԼՈՐԻ ՍԵՐԸ

Երբ մենք Երևանի Կլարա Ցետկինի անվան կարի № 1 ֆաբրիկայում հարցրինք լավագույն ագիտատորներից մեկի անունը, ֆաբրիկայի պարտիական կազմակերպության բյուրոյի քարտուղար Մ. Վարդանյանն ասաց՝ Ռաֆիկ Վարդանյան, և անմիջապես ավելացրեց. այս կոլեկտիվում է աճել նա, հասակ առել ու դաստիարակվել, միշտ կատարել հասարակական աշխատանք, շահել բոլորի սերն ու համակրանքը:

Եվ իրոք, նայում ես այդ համեստ ու վառվռուն երիտասարդին և ակամայից հարգանքով լցվում նրա նկատմամբ, ուրախանում նրա կատարած հրանալի գործերով:

Թեև կարճ, բայց հարուստ է ագիտատոր Ռաֆիկ Վարդանյանի աշխատանքային ու հասարակական գործունեությունը, ուսանելի և խրախուսելի է նրա ագիտացիոն աշխատանքի փորձը: Յոթ տարի առաջ ավարտելով Երևանի № 29 միջնակարգ դպրոցը, նա ոտք դրեց արտադրություն, սկզբում աշխատեց մեխանիկի օգնական, ապա մեխանիկ: Աշխատանքի հետ զուգընթաց նա սովորեց Երևանի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետի արդյունաբերության էկոնոմիկայի երեկոյան բաժնում և ստացավ բարձրագույն կրթություն:

1959 թվականին, երբ առաջին անգամ նրան հանձնարարվեց ագիտացիոն-մասսայական աշխատանք կատարել 5-րդ և 11-րդ ագրեգատներում աշխատող բանվորների շրջանում, հենց սկզբից նրան հետաքրքրեց այն հարցը, թե ինչպես անել, որպեսզի ագիտացիոն-մասսայական աշխատանքը դառնա կոնկրետ գործերի կազմակերպման միջոց, որպեսզի այն օգնի ֆաբրիկայի առջև դրված խնդիրների կատարման գործին: Եվ դա հաջողվել է նրան: Ներկայումս, ուր ագիտատոր է Ռաֆիկ Վարդանյանը, բոլոր բանվորները կատարում և գերակատարում են իրենց արտադրական առաջադրանքները:

Թեև ձեռնարկությունը կատարում է համախառն արտադրանքի պլանը, թեև բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, բայց թողարկվող արտադրանքը ինչպես հարկն է չի բավարարում սպառողների հարաճուն պահանջները: Այդ է պատճառը, որ ագիտատորը իր ագիտացիոն զրույցներում հատուկ ուշադրու-

թյուն է դարձնում որակի բարձրացման հարցերին: Եվ դա հասկանալի է, չէ՞ որ խնդիրը միայն արտադրելը չէ, այլև արտադրանքի բարձր որակ ապահովելն է, սպառման հարցով հետաքրքրվելը: Ագիտատոր Վարդանյանը իր զրույցներում մեծ տեղ է տալիս արտադրության առաջավորների փորձի պրոպագանդմանն ու ընդհանրացմանը:

Վերջերս նա ունկնդիրների հետ զրույց ունեցավ «Նորին, առաջավորին լայն ճանապարհ» թեմայով: Այդ օրը ագիտատորը բանվորներին պատմեց Մոսկվայի «Բոլշևիչկա» կարի ձեռնարկության կոլեկտիվի աշխատանքի պրոգրեսիվ մեթոդների, նրանց ձեռք բերած հաջողությունների մասին: Այդ առթիվ աշխույժ զրույց ծավալվեց արտադրանքի որակի բարելավման գործում ֆաբրիկայի բոլոր օղակներում համաչափ աշխատանքի ապահովման նշանակության շուրջը: Ագիտատորը բանվորներին բացատրեց, որ համաչափ աշխատանքի ապահովումը պայմանավորված է հումքի և օժանդակ նյութերի մատակարարման բարելավումով, մի հանգամանք, որ հիանալի է կազմակերպված «Բոլշևիչկա» ֆաբրիկայում: Նա կոնկրետ օրինակներով պարզաբանեց հումքը, էլեկտրաէներգիան խնայողաբար օգտագործելու կարևորությունը: Այդ կապակցությամբ նա օգտագործեց ֆաբրիկայի և հենց իրենց ագրեգատի առօրյա աշխատանքին վերաբերող տեղական փաստեր, խրախուսեց այն ունկնդիրներին, որոնք հատուկ ուշադրություն են դարձնում հումքի խնայողության և արտադրանքի որակը բարելավելու վրա:

Ագիտատոր Վարդանյանը զրույցի ընթացքում խելացիորեն օգտագործում է նաև դիտողական նյութերը:

Արտադրա-տեխնիկական բազմաթիվ հարցերից բացի, ագիտատոր Վարդանյանը իր զրույցներում կարևոր տեղ է հատկացնում նոր մարդու դաստիարակությանը: Նրա դաստիարակչական աշխատանքի շնորհիվ է, որ այսօր շատ երիտասարդ բանվորներ դարձել են աշխատանքի առաջավորներ (օրինակ, Շ. Ղազարյանը, Կ. Խաչատրյանը և ուրիշներ): Ագիտատորը միշտ օգնել, միշտ հետևել է նրանց՝ յուրաքանչյուր քայլափոխում, խորհուրդներ տվել և իր անձնական օրինակով ոգևորել Այսօր նա գոհ է իր աշխատանքից: Գոհ են բոլորը:

Ագիտատոր Ռաֆիկ Վարդանյանը շահել է կոլեկտիվի և երիտասարդության սերը:

ՎԼԱԴԻՄԻՐ ՍԵՎՅԱՆ

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

(Թվեր և փաստեր)

Ամեն տարի ավելի մեծ և ավելի փայլուն հաջողություններ են ձեռք բերում Սովետական Հայաստանի աշխատավորները ժողովրդական տնտեսության զարգացման գործում: Այդ են հաստատում Հայկական ՍՍՌ վեցերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիայի արդյունքները:

☞ Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը յոթնամյակի անցած վեց տարում աճել է 80,6 տոկոսով: Ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկությունները ժամկետից 10 օր շուտ կատարել են 1964 թվականի պլանը:

☞ Անցած վեց տարում գործարկվել են 220 նոր ձեռնարկություններ և խոշոր արտադրամասեր: Նույն ժամանակամիջոցում արդյունաբերական հիմնական ֆոնդերի վրա ծախսվել է 518 միլիոն ռուբլի:

☞ 1964 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումներն աճեցին 15 տոկոսով:

☞ Մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը նոր և ավելի բարձր զարգացման կհասնի այս տարի: 1964 թվականի 8 տոկոսի փոխարեն 1965 թվականին միայն ռեսպուբլիկայի արդյունաբերությունը կաճի 12 տոկոսով:

☞ Այս տարի մեր ռեսպուբլիկայի քիմիական, մեքենաշինական, թեթև և սննդի արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, բնակարանային-կոմունալ տնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետագա զարգացման համար ծախսվելու է 307 միլիոն 900 հազար ռուբլի:

☞ Առաջիկայում խոշոր աշխատանք կկատարվի էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացնելու համար: Նախատեսված է այս տարի մոտավորապես 60 տոկոսով ավելացնել էլեկտրաէներգիայի արտադրությունը ռեսպուբլիկայի ջերմաէլեկտրակայաններում:

☞ Ռեսպուբլիկայում բուռն թափով կզարգանա քիմիական արդյունաբերությունը: Այս տարի սինթետիկ կաուչուկի արտադրությունը կավելանա 10 տոկոսով, կաուստիկ սոդայինը՝ 14, վինիլացետատինը՝ 85 տոկոսով, պոլիվինիլացետային էմուլսիայինը՝ մոտ 2,8 անգամ, պոլիվինիլսպիրտինը՝ 3,4 անգամ:

☞ Այս տարի նախորդ տարվա համեմատությամբ ավելի շատ ժողովրդական սպառման ապրանքներ կարտադրվեն: Թեթև արդյունաբերության արտադրանքը 1965 թվականին, 1964 թվականի

համեմատությամբ, կաճի 11,5 տոկոսով, իսկ սննդարդյունաբերության՝ 14,8 տոկոսով։

☞ Նախատեսված է 1965 թվականին երկաթուղային փոխադրումներն ավելացնել 4 տոկոսով, ավտոմոբիլային փոխադրումներինը՝ 13,4 տոկոսով և շահագործման հանձնել երկաթուղային 3 կայաններ։

☞ Ուրախալի է իմանալ, որ այս տարի կավարտվի Երևան—Թբիլիսի ռադիոռելեային գծի կառուցումը։ Դա հնարավորություն կտա հեռուստատեսային հաղորդումներ ընդունել Մոսկվայից և մեր երկրի մյուս քաղաքներից։

☞ Որոշակի հաջողություններ են ձեռք բերել նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։ Միայն մեկ տարում ոռոգելի հողերի տարածությունն ավելացել է վեց հազար հեկտարով, ջրովի դարձված արոտավայրերինը՝ 23 հազար հեկտարով։

☞ Այս տարի կոլտնտեսությունները պետությանը կվաճառեն 115 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 20 հազար տոննա բամբակ, 14 հազար տոննա ծխախոտ, 14 հազար տոննա խորդենի, 20 հազար տոննա կարտոֆիլ, 126 հազար տոննա բանջարեղեն, 160 հազար տոննա խաղող, 35 հազար տոննա պտուղ և այլն։

☞ Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները այս տարի կստանան 1.155 տրակտոր, 250 հացահատիկային կոմբայն, 574 բեռնատար ավտոմեքենա և շատ ուրիշ տեխնիկա։

☞ Նախատեսված է ընթացիկ տարում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությանը հատկացնել 170 հազար տոննա հանքային պարարտանյութ, անցյալ տարվա 120 հազար տոննայի դիմաց։

☞ Եթե 1952—1958 թվականներին կապիտալ ներդրումների տարեկան միջին աճը կազմել է 6 տոկոս, ապա վերջին վեց տարում այն կազմել է 17 տոկոս։

☞ Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պլանով միայն կենտրոնացված կապիտալ ներդրումները սահմանվում են 345 միլիոն ռուբլի։

☞ Ռեսպուբլիկայի արդյունաբերության կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի 21 տոկոսը կամ 36 միլիոն ռուբլի ներդրվելու է քիմիական արդյունաբերության զարգացման համար։

☞ 1965 թականին ռեսպուբլիկայի էլեկտրակայանների շինարարությունն աճելու է 39 տոկոսով, թեթև արդյունաբերության օբյեկտներինը՝ 49, սննդի արդյունաբերության օբյեկտներինը՝ 37,7, գյուղատնտեսական օբյեկտներինը՝ 33 տոկոսով։

☞ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում կգործարկվի սառնարանների արտադրությունը, որը հնարավորություն կտա տարեկան թողարկել 200 հազար տնային սառնարան։



☞ Էլ ավելի կզարգանա ռեսպուբլիկայի էներգետիկ բազան։ 1965 թվականի ընթացքում կսկսի աշխատել Կիրովականի ջերմաէլեկտրակայանը՝ 25 հազար կիլովատ կարողությամբ։ Այս տարի Երևանի ջերմաէլեկտրակայանի կարողությունը կմեծանա 150 հազար կիլովատով։

☞ Եթե 1964 թվականին թեթև և սննդի արդյունաբերության զարգացմանը հատկացվել էր 12,2 միլիոն ռուբլի, ապա այս տարի այդ հատկացումները կազմում են 17,45 միլիոն ռուբլի։

☞ Սոցիալ-կուլտուրական միջոցների ֆինանսավորման համար այս տարի հատկացվել է 272,9 միլիոն ռուբլի՝ 1964 թվականի 233,8 միլիոն ռուբլու դիմաց։

☞ Ժողովրդական կրթության, գիտության և կուլտուրայի զարգացման համար այս տարի հատկացվել է 157,9 միլիոն ռուբլի՝ 1964 թվականի 132,5 միլիոն ռուբլու դիմաց։

☞ Առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի զարգացման համար ծախսվելու է 54,1 միլիոն ռուբլի՝ 1964 թվականի 45 միլիոն ռուբլու դիմաց։

☞ Պետական սոցիալական ապահովագրության և սոցիալական ապահովության համար ծախսվելու է 52,2 միլիոն ռուբլի՝ 1964 թվականի 47,9 միլիոն ռուբլու դիմաց։

☞ Բազմազավակ և միայնակ մայրերը այս տարի պետությունից իբրև նպաստ կստանան 8,7 միլիոն ռուբլի՝ 1964 թվականի՝ 8,4 միլիոն ռուբլու դիմաց։

☞ Մեր ռեսպուբլիկայի ազգային եկամուտը 1965 թվականի պլանով, 1964 թվականի համեմատությամբ, կաճի 11 տոկոսով։

☞ Եթե անցած վեց տարիներին ռեսպուբլիկայի բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձը տարեկան միջին հաշվով ավելացել է 2,7 տոկոս, ապա միայն 1965 թվականին այն կբարձրանա մոտ 4,7 տոկոսով։

☞ Եթե 1959—1964 թվականներին ռեսպուբլիկայի բանվորների և ծառայողների աշխատավարձի ֆոնդի տարեկան միջին աճը կազմել է 11 տոկոս, ապա 1965 թվականին այն կավելանա 19,5 տոկոսով։

☞ Եթե նախորդ վեց տարիներին մանրածախ ապրանքաշրջանառության տարեկան միջին աճը եղել է 8,3 տոկոս, ապա 1965 թվականին այն կաճի 10,6 տոկոսով։

☞ 1965 թվականին բնակչությունը սպառման հասարակական ֆոնդերից կստանա 336 միլիոն ռուբլի, որը 1964 թվականի համեմատությամբ ավելի է 16 տոկոսով։

☞ Եթե 1964 թվականին մանկական և նախադպրոցական հիմ-

նարկներում ընդգրկված էին 53,8 հազար երեխա, ապա այս տարի այդ թիվը կհասնի 62 հազարի։

☞ 1965 թվականի ընթացքում բուհերում կընդունվեն մոտ 9.000 մարդ, տեխնիկումներում՝ 9.360 և պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում՝ ավելի քան 7.000 մարդ։

☞ Եթե 1958 թվականին ռեսպուբլիկայի յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում էր 65,8 հիվանդանոցային մահճակալ, ապա այս տարի այդ թիվը կկազմի 85,3։

☞ Նախադպրոցական հիմնարկներում ավելի քան 62 հազար երեխաների պահպանման ու դաստիարակման համար այս տարի հատկացվել է 20,3 միլիոն ռուբլի։

☞ Ռեսպուբլիկայի հանրակրթական դպրոցներում սովորող մոտ կես միլիոն աշակերտների ուսուցումն ապահովելու նպատակով հատկացված է 59,7 միլիոն ռուբլի, որը 1964 թվականի համեմատությամբ ավելի է 24 տոկոսով։ 8,8 միլիոն ռուբլի հատկացված է գիշերօթիկ և երկարօրյա դպրոցների պահպանման համար։

☞ Այս տարի բանվորական, գյուղերում դպրոցներում կսովորեն և դրանցում կհեռակայեն 33.300 աշակերտ, որոնց ուսուցումն ապահովելու համար հատկացված է 3,1 միլիոն ռուբլի։

☞ 1965 թվականին ռեսպուբլիկայի բուհերի և տեխնիկումների ուսանողների թիվը կկազմի 65,5 հազար մարդ։

☞ Այս տարի շուրջ 56 հազար կոլտնտեսականներ կստանան կենսաթոշակ։

☞ Յոթնամյակի անցած տարիներին պետական կապիտալ ներդրումների հաշվին ռեսպուբլիկայում շահագործման են հանձնվել մոտ 3 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։

☞ Այս տարի պետական կապիտալ ներդրումների հաշվին շահագործման կհանձնվեն 696 հազար քառակուսի մետր ընդհանուր բնակելի տարածությամբ նոր բնակարաններ։ Այդ 1964 թվականի համեմատությամբ ավելի է 7,4 տոկոսով։

☞ Միայն բնակարանային կոոպերատիվների գծով կկառուցվեն 127 հազար քառակուսի մետր տարածությամբ բնակարաններ։

☞ Այս տարի նախատեսվում է արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 4,1, շինարարության մեջ՝ 6,7 տոկոսով։

Սովետական Հայաստանի աշխատավորները խոշոր հաջողություններով ավարտեցին յոթնամյակի վեցերորդ տարին՝ 1964 թվականը։

Ինչպես միշտ, այնպես էլ այժմ նրանք իրենց ստեղծագործական եռանդն ու ջանքերը կուղղեն պարտիայի նոր առաջադրած խնդիրները սրբությամբ կենսագործելու համար։



## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՕՐԳԱՆԸ

Եղբայրական սոցիալիստական պետությունների պրակտիկայի մեջ հաստատ մուտք է գործել ժողովրդատնտեսական կարևորագույն պրոբլեմները համատեղ լուծելու ջանքերը միավորելու սկզբունքը։ Այդ համատեղ ջանքերը կազմակերպում և կոորդինացնում է Տնտեսական փոխօգնության խորհուրդը, որն ստեղծվել է 1949 թվականին։

Իսկ իրենից ի՞նչ է ներկայացնում այդ միջազգային կազմակերպությունը, ինչպե՞ս է նա կառուցված, ի՞նչ նպատակներ ու խնդիրներ ունի և ո՞րն է նրա պրակտիկ գործունեությունը։

Տնտեսական փոխօգնության խորհուրդը նոր տիպի միջազգային տնտեսական կազմակերպություն է, որը խարսխված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, մասնակից երկրների լիակատար իրավահավասարության, նրանց ազգային շահերի և սուվերենության հարգման, փոխադարձ շահի և ընկերական փոխօգնության սկզբունքների վրա։

Միանգամայն այլ հիմքերով են ստեղծվում միջազգային իմպերիալիստական տնտեսական դաշինքները։ Դրանց մեջ մտնող երկրները փաստորեն կորցնում են իրենց սուվերենությունը և տնտեսական ինքնուրույնությունը։

Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնում են Բուլղարիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Հունգարիան, Մոնղոլիան, Լեհաստանը, Չեխոսլովակիան, Ռումինիան և Սովետական Միությունը։

Կուբայի Ռեսպուբլիկան, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան իրենց ցանկությամբ Տնտեսական փոխօգնության խորհրդին մասնակցում են որպես դիտորդներ։ Հարավսլավիայի Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկան, որը նույնպես մասնակցել է որպես դիտորդ, այժմ ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում Տնտեսական փոխօգնության խորհրդի հետ տնտեսական համագործակցության ավելի սերտ ձևերի է անցել։

Տնտեսական փոխօգնության խորհուրդը երկրների

բազմակողմանի տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցություն է կազմակերպում նրանց բնական հարստությունների առավել ռացիոնալ օգտագործման, հօգուտ յուրաքանչյուր երկրի և ամբողջ սոցիալիստական համագործակցության արտադրական ուժերն արագորեն զարգացնելու համար:

Տնտեսական փոխօգնության խորհրդի մասնակից սոցիալիստական երկրների միջև կապերը հաջողությամբ զարգանում են իրավահավասարության և փոխադարձ շահի հիման վրա: Այդ կապերի ձևերը շատ բազմազան են. նրանք միմյանց վարկեր են տրամադրում, կատարում են առևտրական փոխանակություն, մատակարարում են մեքենաներ, սարքավորումներ, հումք, ցույց են տալիս տեխնիկական և գիտական օգնություն:

Վերջին տարիներս լայն տարածում է ստացել համագործակցության այնպիսի ձևը, ինչպիսին է առանձին երկրներում արդյունաբերական խոշոր օբյեկտների կառուցումը Խորհրդի անդամ մյուս երկրների մասնակցությամբ: Օրինակ, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Չեխոսլովակիայի Սոցիալիստական Ռեսպուբլիկան հաջողությամբ համագործակցում են Լեհաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ, վերջինիս օգնելով ածխարդյունաբերության զարգացման գործում: Չեխոսլովակիայի Սոցիալիստական Ռեսպուբլիկան և Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան համատեղ կառուցում են գազով աշխատող էլեկտրակայաններ: ԳԴՌ-ն Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկային օգնում է գորշ ածխի արդյունահանումը զարգացնելու գործում: Չեխոսլովակիան ԳԴՌ-ի, իսկ Լեհաստանը Սովետական Միության հետ համագործակցում են կալիական պարարտանյութերի արտադրության բնագավառում: Եղբայրական երեք երկրներ՝ ԳԴՌ-ն, Լեհաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկան և Չեխոսլովակյան Սոցիալիստական Ռեսպուբլիկան, Ռումինիայի հետ համատեղ կառուցում են վիսկոզային և թղթի ցելյուլոզի արտադրության կոմբինատ: Բուլղարիայի, ԳԴՌ-ի, Հունգարիայի, Լեհաստանի և Չեխոսլովակիայի մասնակցությամբ ՍՍՌՄ-ում ավարտվել է Կինգիսեպի Ֆոսֆորիտի հանքի առաջին հերթի և հարստացուցիչ ֆաբրիկայի շինարարությունը:

Արդի փուլում Տնտեսական փոխօգնության խորհրդի գլխավոր նպատակն է՝ այդ կազմակերպության ան-



դամ երկրների ջանքերի միավորման ու կոոպերացման միջոցով պլանաչափ զարգացնել նրանց ժողովրդական տնտեսությունը և շարունակ հավասարեցնել նրանց տնտեսական զարգացման մակարդակները, անընդհատ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, աշխատավորների բարեկեցությունը:

Այդ կապակցությամբ ներկայումս Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեության մեջ առաջնակարգ նշանակություն է ստանում Խորհրդի մասնակից երկրների ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերի զարգացման պլանների կոորդինացման աշխատանքը:

Առաջադրված խնդիրները կատարելու համար Տնտեսական փոխօգնության խորհուրդը, իր կանոնադրության համաձայն, ունի հետևյալ օրգանները. Խորհրդի սեսիա, Գործադիր կոմիտե, Մշտական հանձնաժողովներ և քարտուղարություն:

Տնտեսական փոխօգնության խորհրդի բարձրագույն օրգանն է Խորհրդի սեսիան, որի աշխատանքին մասնակցում են խորհրդի անդամ բոլոր երկրների կառավարական պատվիրակությունները: Սեսիան հերթականությամբ հրավիրվում է այդ պետությունների մայրաքաղաքներում՝ այն երկրի պատվիրակության ղեկավարի նախագահությամբ, որտեղ գումարվում է սեսիան:

Սեսիան որոշում է Տնտեսական փոխօգնության խորհրդի օրգանների աշխատանքի ուղղությունը, քննարկում է Խորհրդի գործունեության վերաբերյալ Գործադիր կոմիտեի զեկուցագրերը, տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության հիմնական հարցերը, ինչպես նաև հիմնադրում է այնպիսի օրգաններ, որոնք ինքն անհրաժեշտ է համարում Խորհրդի վրա դրված ֆունկցիաները կատարելու համար:

Տնտեսական փոխօգնության խորհրդի Գործադիր կոմիտեն բաղկացած է Խորհրդի անդամ բոլոր երկրների ներկայացուցիչներից՝ կառավարությունների ղեկավարների տեղակալների մակարդակով: Նա նիստեր է հրավիրում ոչ ուշ, քան 2 ամիսը մեկ անգամ: Գործկոմը ղեկավարում է Տնտեսական փոխօգնության խորհրդի առջև ծառացած խնդիրները նրա սեսիաների որոշումներին համապատասխան կատարելու ամբողջ աշխատանքը, սիստեմատիկաբար հետևում է, որ Խորհրդի անդամ երկրները կատարեն Խորհրդի օրգանների կազմած և

իրենց կողմից ընդունված հանձնարարականներից բխող պարտավորությունները։

Գործադիր կոմիտեին կից ստեղծված է Տնտեսական պլանների ամփոփիչ հարցերի բյուրո, որտեղ խորհրդի անդամ յուրաքանչյուր երկիր ներկայացված է պետական պլանային օրգանի նախագահի տեղակալով։

Բյուրոյի հիմնական խնդիրն է առաջարկություններ նախապատրաստել խորհրդի անդամ երկրների ժողովրդական տնտեսության զարգացման պլանների կոորդինացման հարցերի վերաբերյալ, ինչպես նաև անմիջականորեն նպաստել այդ երկրների պլանային օրգանների բազմակողմանի համագործակցությանը։

Երկրների տնտեսական կապերի հետագա զարգացմանն աջակցելու և ժողովրդական տնտեսության առանձին բնագավառներում բազմակողմանի համագործակցություն կազմակերպելու նպատակով, խորհրդի սեսիայի որոշումներով տարբեր ժամանակներ ստեղծվել են շինարարության, քիմիայի, ածխի, նավթի, թեթև ու սննդի արդյունաբերության, մետալուրգիայի, մեքենաշինության, էլեկտրաէներգիայի, գյուղատնտեսության, տրանսպորտի և այլ Մշտական հանձնաժողովներ։ Ներկայումս Տնտեսական փոխօգնության խորհրդում աշխատում են 21 հանձնաժողովներ։

Հանձնաժողովները միջոցառումներ են մշակում խորհրդի անդամ երկրների ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղերի առավել ռացիոնալ զարգացման ուղղությամբ։ Հանձնաժողովների աշխատանքում զգալի տեղ են գրավում նոր տեխնիկայի, գիտահետազոտական ու նախագծային-կոնստրուկտորական աշխատանքների զարգացման պլանների կոորդինացման հարցերը։ Խորհրդի մասնակից յուրաքանչյուր երկիր այդ հանձնաժողովներում իր ներկայացուցիչներն ունի, որպես կանոն, տնտեսության համապատասխան ճյուղերը տնօրինող մինիստրների մակարդակով։ Հանձնաժողովների նախագահներն են այն երկրների պատվիրակությունների ղեկավարները, որտեղ պետք է աշխատի այս կամ այն հանձնաժողովը։ Վերջինիս աշխատանքի տեղն ընտրելիս հաշվի է առնվում ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի զարգացումը, մասնագիտական կադրերի և փորձի առկայությունը։

Հանձնաժողովները հաշվետու են Տնտեսական փոխօգնության խորհրդի սեսիային և գործադիր կոմիտեին։



Տնտեսական փոխօգնության խորհրդի օրգանները (խորհրդի սեսիան, Գործադիր կոմիտեն, հանձնաժողովները) կարող են ընդունել հանձնարարականներ և որոշումներ։ Երկրներին հանձնարարականներ են տրվում տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության հարցերի շուրջը, իսկ որոշումները վերաբերում են կազմակերպական ու պրոցեդուրային հարցերին։ Տնտեսական փոխօգնության խորհրդի օրգանների ընդունած հանձնարարականները խորհրդի անդամ երկրների կառավարությունները քննարկում են և իրականացնում այդ երկրների կառավարությունների կամ այլ իրավասու օրգանների որոշմամբ՝ ազգային օրենսդրությանը համապատասխան։

Տնտեսական փոխօգնության խորհրդի հանձնարարականներն ու որոշումներն ընդունվում են միայն բոլոր շահագրգռված երկրների համաձայնությամբ, ընդսմին նրանցից յուրաքանչյուրն իրավունք ունի իր շահագրգռվածությունը հայտնել խորհրդում քննարկվող յուրաքանչյուր հարցում։ Հանձնարարականներն ու որոշումները չեն տարածվում այն երկրների վրա, որոնք հայտարարում են, որ իրենք շահագրգռված չեն այս կամ այն հարցում։ Բայց այդ երկրներից յուրաքանչյուրը ցանկացած ժամանակ կարող է միանալ մյուս երկրների ընդունած հանձնարարականներին ու որոշումներին։

Տնտեսական փոխօգնության խորհրդի տնտեսական և գործադիր-վարչական օրգանն է խորհրդի Քարտուղարությունը, որը բաղկացած է քարտուղարից, նրա տեղակալներից և անհրաժեշտ անձնակազմից։ Քարտուղարությունում ստեղծված են ճյուղային բաժիններ, որտեղ խոշոր մասնագետներ՝ տնտեսագետներ և ինժեներներ են աշխատում խորհրդի անդամ բոլոր երկրներից։

Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրները, ելնելով խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունից, մեծ ուշադրություն են դարձնում բոլոր պետությունների հետ տնտեսական կապերի բազմակողմանի զարգացմանը՝ անկախ նրանց սոցիալական սիստեմից։ Ներկայումս նրանք Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի 45 պետությունների տնտեսական ու տեխնիկական օգնություն են ցույց տալիս՝ այդ երկրներում անկախ ազգային ինդուստրիա ստեղծելու համար կարևոր նշանակություն ունեցող ավելի քան 1.220 ար-

*դյունաբերական ձեռնարկությունների կառուցման գործում։ Այդ օգնությունն զգալի չափով ցույց է տրվում երկարատև վարկերով, որ խիստ կարևոր է տնտեսապես թույլ զարգացած, հենց նոր ոտքի կանգնած երկրների համար։*

*Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների բազմակողմանի տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցության ընդլայնումն ու խորացումը արագացնում է նրանց էկոնոմիկայի զարգացումը։*

*Սոցիալիզմի երկրները համաշխարհային զարգացման վրա ներգործում են գլխավորապես տնտեսական շինարարության բնագավառում իրենց հաջողություններով։ Խաղաղ մրցության ընթացքում սոցիալիստական երկրներն ապացուցել են իրենց գերակշռությունը տնտեսության կապիտալիստական սիստեմի նկատմամբ։ Դա իր առավել վառ արտահայտությունն է գտնում երկու համաշխարհային սիստեմների տնտեսական զարգացման տեմպերում։ Այսպես, եթե սոցիալիզմի երկրներում արդյունաբերական արտադրության ծավալը 1963 թվականին նախապատերազմյան մակարդակը գերազանցել էր մոտ 8 անգամ, ապա կապիտալիստական երկրներում այն գերազանցել էր ընդամենը 2,9 անգամ։ Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրներն այժմ թողարկում են ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 31 տոկոսը։*

*Սոցիալիստական երկրների սերտ համագործակցությունն ու փոխօգնությունը սոցիալիզմի ու կոմունիզմի հաջող կառուցման օբյեկտիվ օրինաչափությունը և պարտադիր պայմանն են։*

*Տնտեսական փոխօգնության խորհուրդը բազմապատկում է այն մեծ առավելությունները, որ կապիտալիստական պետությունների հանդեպ ունի յուրաքանչյուր սոցիալիստական երկիր։*

*Ս. ԶԱՎՈԼԺՍԿԻ*



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. 1965 թվականը դարձնենք նոր հաջողությունների տարի

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ*— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պետական պլանի մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. փետրվարի 10-ի համարում։*

Առաջընթացի ուղիով, *«Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 26-ի առաջնորդողը։*

Ամեն ինչ հանուն մարդու, նրա բարօրության համար, *«Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 23-ի առաջնորդողը։*

Ոգեշնչող պլաններ, *Երևանի Լենինյան շրջանի ընտրողների հանդիպումը ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատի հետ, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 23-ի համարում։*

## 2. Ավելի արդյունավետ օգտագործենք արտադրության ռեզերվները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ*— Գիտատեխնիկական առաջադիմությունը և արտադրության ռեզերվների օգտագործումը, *ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ սեսիային տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 10-ի համարում։*

*Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ*— Արդյունաբերություն և տրանսպորտ, *Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի չորրորդ սեսիայում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 24-ի համարում։*

Ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու մասին տեղեկություններ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի համարներում։*

## 3. Ծաղկում և բարգավաճում է Սովետական Հայաստանը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ*— Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պետական պլանի մասին, *զեկուցում*

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի չորրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 24-ի համարում:

Ա. Կ. ՇԵԿՈՅԱՆ— Հայկական ՍՍՌ 1965 թվականի պետական բյուջեի մասին և Հայկական ՍՍՌ 1963 թվականի պետական բյուջեի կատարման մասին, զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի չորրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 24-ի համարում:

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի չորրորդ սեսիայի նյութերը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 24-ի համարում:

## 4. Լրիվ նախապատրաստված դիմավորենք գարնանացանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ— Գյուղատնտեսություն, Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի չորրորդ սեսիայում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 24-ի համարում:

Գերազանց նախապատրաստվել գարնանը, «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 19-ի առաջնորդողը:

## 5. «Քրիստոսի ծննդի» առասպելը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Գիտական աթեիզմի հիմունքները», առանձին գիրք, գլուխ 5-րդ, էջ 210—243, Հայպետհրատ, 1963:

«Պատասխաններ հավատացյալներին», տեղեկատու, գլուխ 3-րդ, էջ 167—181, Հայպետհրատ, 1963:



---

### ՈՒՂՂՈՒՄ

«Ագիտատորի բլոկնոտի» 1964 թ. 23-րդ համարի 18-րդ էջի չորրորդ պարբերությունը (վերևից ներքև) կարդալ հետևյալ կերպ. «Պաշտոնական տվյալների համաձայն Բրազիլիայի բնակչության կեսը՝ մոտ 39 միլիոնը, ապրում է գյուղերում», այնուհետև՝ ինչպես տեքստում:

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

«Հայաստան» հրատարակչությունը լույս է ընծայել.

ԱՆԺԵԼԱ ՍՏԵՓԱՆՅԱՆ.— «Անծանոթ ծանոթներ»: Ժողովածուի պատմվածքները ներկայացնում են մեր առօրյա հոգսերի, դժվարությունների դեմ մղվող պայքարը: Ճամփորդական հուշատետրում պատմվում է ամերիկյան ժողովրդի այն ներկայացուցիչների մասին, որոնք դեմ են ատոմային պատերազմին, որոնք ջերմորեն ձգտում են բարեկամական կապեր հաստատել սովետական ժողովրդի հետ և ընդհանուր ուժերով կռվել պատերազմի հրձիգների դեմ: Գինը՝ 48 կոպ., տպաքանակ՝ 5.000:

«Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի քաղաքացիական դատավարության օրենսգիրք»: Ընդունված է Հայկական ՍՍՌ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիայի կողմից 1964 թվականի հունիսի 4-ին: Գինը՝ 35 կոպ., տպաքանակ՝ 3.000:

«ԱՍՔ ԻԳՈՐԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ ՄԱՍԻՆ»: Երրորդ վերամշակված հրատարակություն: Թարգմանությունը Սուրեն Վահունու: Գինը՝ 17 կոպ., տպաքանակ՝ 7.000:

ԱՐՇԱԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ.— «Պատմվածքներ և հուշեր»: Գրքի հեղինակը Վրաստանի սովետահայ գրողների ավագ սերնդի ներկայացուցիչներից է: 1910 թ. ավարտելով Թիֆլիսի Ներսիսյան, իսկ 1911 թ. երաժշտական դպրոցները, Վարդանյանը գիտելիքների մեծ պաշարով մտնում է մանկավարժական հասարակական ասպարեզ: Նա միաժամանակ իր ինքնուրույն և թարգմանական գործերով հանդես է գալիս տեղի պարբերական մամուլում: Սովետական կարգերի հաստատումից հետո Ա. Վարդանյանն ակտիվ մասնակցություն է ունենում Վրաստանի գրողների միության հայկական սեկցիայի գրական-հասարակական աշխատանքներին: 1934 թ. Հայպետհրատը առանձին գրքով հրատարակեց հեղինակի պատմվածքների ժողովածուն՝ «Ջեզոք գոտի» վերնագրով: 1956 թ. Վրաստանի պետհրատը հրատարակեց երկրորդ ժողովածուն՝ «Իմ ժամանակակիցները» խորագրով, իսկ 1961 թ. վրացերեն լույս տեսավ նրա «Աջ ձեռքը» փոքրիկ գրքույկը: Ներկա ժողովածուն հրատարակվում է որպես հիշատակ բազմավաստակ մանկավարժի, հասարակական գործչի և գրողի: 132 էջ, գինը՝ 17 կոպ., տպաքանակ՝ 5.000:

«Միտք» հրատարակչությունը լույս է ընծայել.

ՀԱՅՐԱՊԵՏ ՊԵՏՐՈՍՅԱՆ.— «Անդրկովկասի բոլշևիկների պայքարը ռազմա-արդյունաբերական կոմիտեների դեմ» (1915—1917 թթ. փետրվար): Աշխատության մեջ լուսաբանվում է ռազմա-արդյունաբերական կոմիտեների ակտիվ բոյկոտի լենինյան տակտիկայի կենսագործման համար Անդրկովկասի բոլշևիկների մղած հերոսական պայքարի պատմությունը: Գինը՝ 72 կոպ., տպաքանակ՝ 1.000:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ



**ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ ЦК КП АРМЕНИИ**

# Агитатори блокнот № 1

# 1965


**Խմբագիր՝ Վ. Խ. ԽՆԳԻԲԱՐՅԱՆ**

*ՎՖ 08503* *Պատվեր 1469* *Տիրաժ 9233*

*Հանձնված է արտադրության 27/XII 1964 թ.։*

*Ստորագրված է տպագրության 6/I 1965 թ.։*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

**Ինդեքս 77704** *Գինը 8 կոպ.*